— 21 —

ԵՐՈՒԱՆԴ ՎԱՐԴԱՊԵՏ

# ՎԵՐԱՆՈՐՈԳՈՒԹԵԱՆ
# ԿԱՐԻՔԸ
## ՀԱՅՈՑ ԵԿԵՂԵՑՈՒ ՀԱՄԱՐ



ՎԱՂԱՐՇԱՊԱՏ
ՏՊԱՐԱՆ ՄԱՅՐ ԱԹՈՌՈՅ Ս. ԷՋՄԻԱԾՆԻ
1908

— 21 —

ԵՐՈՒԱՆԴ ՎԱՐԴԱՊԵՏ

# ՎԵՐԱՆՈՐՈԳՈՒԹԵԱՆ ԿԱՐԻՔԸ

## ՀԱՅՈՑ ԵԿԵՂԵՑՈՒ ՀԱՄԱՐ



ՎԱՂԱՐՇԱՊԱՏ
ՏՊԱՐԱՆ ՄԱՅՐ ԱԹՈՌՈՅ Ս. ԷՋՄԻԱԾՆԻ
1908

# ՎԵՐԱՆՈՐՈԳՈՒԹԵԱՆ ԿԱՐԻՔԸ

## ՀԱՅՈՑ ԵԿԵՂԵՑՈՒ ՀԱՄԱՐ

*Մեր միաբանակից, «Արարատ»ի խմբագիր Գարեգին վարդապետ Յովսէփեանը այս տարուայ Յունուարի համարում մի առաջնորդող էր գրել «Հայոց Հայրապետական աթոռը» վերնագրով, աշխատելով որքան կարելի է զգուշաւոր և մեղմ ոճով ցոյց տալ մեր եկեղեցու մի քանի այնպիսի պակասութիւններ ու թերութիւններ, որոնք անպայման կարօտ են բարեփոխութեան։ Թւում էր, թէ նոյն իսկ հայոց հոգևորականութեան ամենապահպանողական մասի մէջ անգամ այդ խնդրի մասին ուրիշ կարծիք լինել չէր կարող։ Բանն այն է, սակայն, որ այդ յօդուածի բարենորոգչական պահանջները հաճելի չեն եղել Տաճկահայոց բարձրաստիճան մի եկեղեցականի. նա «Նորութիւնք» վերնագրով մի քանի դիտողութիւններ է ուղարկել, որը տպուած է «Արարատ»ի սոյն տարուայ Ապրիլի համարում, Գարեգին վարդապետի նկատողութիւնների հետ միասին։ Թէև դրանով «Բացակայ Միաբանը» իրեն արժանի պատասխանը ստացել է արդէն, բայց նրա դիտողութիւնները այնպիսի կէտեր ու գաղափարներ են պարունակում իրենց մէջ, որոնք մեր կողմից անպատասխան մնալ չեն կարող, և մի անգամ էլ*

բաց են անում այն խոր վիհը, որ կայ Հայ եկեղեցականութեան մէջ։ Մինչև այժմ այդ հակադրութիւնը լռութեան էր տրուած կամ արտայայտւում էր շատ խուլ կերպով։ Բայց այժմ Հայոց եկեղեցին այդպիսի անտարբերութեան և անհետաքրքրութեան շնորհիւ այնպիսի դրութեան է հասել, որ լռելն այլ ևս նրա իւրաքանչիւր սրտացաւ պաշտօնեայի համար ծանր յանցանք կլինի թէ. հայ ժողովրդի ու հայ եկեղեցու և թէ իւր սեպհական խղճի ու կրօնական սըրբազան պարտականութեան առաջ։

Բացակայ Միաբանի յօդուածից մարդ այն տպաւորութիւնն է ստանում, որ Հայոց եկեղեցին հիմնական բարեփոխութեան ամենևին կարօտ չէ, ուրեմն շատ լաւ վիճակի մէջ է գտնւում, և խիստ աննշան բաներ են, որոնք սրբագրութեան կարիք ունին։ Այդպիսի կարծիքը տիրող է մեր հոգևորականութեան բազմութեան մէջ և յառաջ է գալիս այն հանգամանքից, որ հին սերնդի ներկայացուցիչների մեծամասնութիւնն ընդհանրապէս և յօդուածագիրը մասնաւորապէս ապրելով բոլորովին այլ շահերով և առանձնացած կեանքով, ամենևին չեն նկատել, թէ ինչ է կատարւում իրենց շուրջը, ինչպիսի ողբալի դրութեան է հասել այն հաստատութիւնը, որի ներկայացուցիչներն ու ղեկավարները լինելու բարձր պատիւն ունին իրենք։

Ով որ ձգտում է և եկեղեցու տեսուչ՝ եպիսկոպոս է դառնում, նա պիտի կարողութիւն

ունենայ ըմբռնելու ամբողջ ժամանակաշրջանի ոգին ու ուղղութիւնը, պիտի հասկանայ թէ ուր է գնում ընդհանուր շարժումը, և իրեն յանձնուած նաւի ղեկն այնպէս ուղղէ, որ խաղալիկ չդառնալով ժամանակի տարուբեր վաղանցիկ հոսանքներին, իւրաքանչիւր նոր շարժման ու հանրամարդկային զարգացման աստիճանների արդիւնքները բեղմնաւոր դարձնէ կրօնական եկեղեցական կեանքի համար, նրանց օգտաւէտ և զօրեղ կողմերը կրօնական աշխարհայեացքին յարմարեցնելով։

Քրիստոնէութեան ամենամեծ զօրութեան և յաղթանակի նշանը իւր ամբողջ պատմութեան ընթացքում եղել է այդ զարմանալի ընդունակութիւնը. նա կարողացել է ընդառաջ գնալ բոլոր իրենից յետոյ սկսուող մտաւոր շարժումներին, նրանց էական և առողջ գծերը իւր մէջ է առել և այդպիսով աւելորդ դարձրել բոլոր նոր ուղղութիւնները, ասպարիզի վրայ մնալով միակ յաղթականը։ Եւ իւրաքանչիւր մտաւոր շարժման ոյժը, եթէ նա արդէն քարացած դաւանանք չէ դարձել, այդ ճկունութեան ու յարաշարժութեան մէջ պէտք է տեսնել։

Կա՞յ այդպիսի յարաշարժութեան ու ճկունութեան ընդունակութիւն մեր այժմեան կրօնական կեանքի մէջ։ Այդ հարցը տալն անգամ աւելորդ է. որովհետև այդ յատկութիւնները ամենազօրեղ կենսունակութեան ու կենդանութեան նշաններն են. իսկ մեր կրօնական կեանքը, որ ամփոփուած է մեր եկեղեցու մէջ, համարեա

մնացած է բոլորովին, չնայելով արտաքին բոլոր հանդիսաւորութեան ու զանգահարութեան։ Պէտք է մտածել այդ խնդրի մասին, գտնել այդպիսի դրութեան պատճառները և միջոցներ ձեռք առնել նոր կեանք ու վերածնութիւն առաջ բերելու մեր եկեղեցում, եթէ նա յիրաւի թանկագին է մեզ համար։ Մեր նպատակն է այստեղ այդ ուղղութեամբ և ճշմարտութեան ու Հայոց եկեղեցու վերակենդանութեան գիտակցութեամբ մի քանի խօսք ասել ընթերցողներին։

Ներկայ պատմական դրութիւնը և հասարակական միջավայրը ըմբռնողի համար նորութիւն չէ, որ մենք այժմ ապրում ենք կրօնական ճգնաժամի մի շրջանում։ Այդ ծանր ճգնաժամը առաջ է եկել այն հանգամանքից—այդպէս է նկարագրում յայտնի փիլիսոփայ Օյկենը*—, որ հնաւանդ սովորական մտածողութեան համաձայն դերպատմական ճշմարտութիւնը կապուել է պատմական որոշ շրջանի հետ միայն և այն միտքն է իշխող դարձել, թէ պէտք է ըստ կարելւոյն անփոփոխ պահպանել արդէն մի անգամ գտած ճշմարտութիւնը և մնալ այն բարձրութեան վրայ, որին հասել ենք։ Այդպիսով պատմութիւնը դառնում է բնականաբար ոչ թէ ձգտումն դէպի նոր ճշմարտութիւն, այլ անընդհատ վերադարձ դէպի հինը։ Կրօնական ապարի-

*) Rudolf Eucken, Hauptprobleme der Religionsphilosophie der Gegenwart, Berlin, 1907 էջ 62—75.

զում այդ հանգամանքը այն տեսակէտից մեծ նշանակութիւն ունի, որ իւրաքանչիւր կրօնի առաջին սկզբնաւորութիւնների մէջ է երևացել նրանց առանձնայատուկ էութիւնը և այդ պատճառով էլ սկզբնաւորութիւնը միշտ գլխաւոր ուղղութիւնն է տուել ամբողջ շարժմանը։

Ընդունելով սակայն այդ մտքի մէջ որոշ ճշմարտութիւն, պէտք է այնուամենայնիւ ասենք, որ հասարակական կեանքի և պատմական զարգացման շնորհիւ անհրաժեշտաբար այնպիսի փոփոխութիւններ են առաջ եկել մեր մտաւոր և հոգևոր կեանքում, որ բոլորովին վտանգաւոր կլինի կրօնի համար հաշուի չառնել նրանց և մտածողութեան հին եղանակը անփոփոխ պահպանել։ Դրանով մենք կապում ենք մեզ համար միակ կարևոր յաւիտենականը մի ժամանակաւոր մտածողութեան հետ, որը մենք այսօր ընդունել այլ ևս չենք կարող. խեղդում ենք մեր համոզմունքը և օտար ենք դարձնում մեզ համար այն, ինչ որ ամենից աւելի մօտ է մեր զգացմունքին ու մտքին։ Գլխաւոր վտանգը այստեղ սակայն այն է, որ մի տեսակ լարուած յարաբերութիւն և երկպառակութիւն է ընկնում կրօնի և մտաւոր աշխարհի մէջ և կրօնը հետզհետէ կարծես յետ է մնում և մի տարբեր աշխարհ կազմում իրեն համար։ Այդ է պատճառը, որ կրօնը հեշտութեամբ երևում է մի աւելի ստոր աստիճանի քաղաքակրթական կեանքի արդիւնք, մի զուտ մարդկային ստեղծագործութիւն, որից վաղուց

առաջ է անցել տիեզերական պատմական շարժումը, և որը այլ ևս տեղ ունենալ չէ կարող մարդկութեան մտաւոր կեանքի մէջ։

Հարց կարող է լինել միայն այն, թէ արդեօք քրիստոնէութեան սկզբնաւորութիւնից յետոյ այդպիսի հիմնական փոփոխութիւններ առաջ եկե՞լ են մարդկային կեանքի մէջ։ Այդ հարցի պատասխանը կասկած չկայ, որ դրական է։ Արդի քաղաքակրթութեան զարգացումը ոչ միայն շատ մասնակի բաներ է փոխել քրիստոնէութեան սկզբնաւորութեան շրջանի համեմատութեամբ, այլ կարելի է ասել փոփոխութեան է ենթարկել ամբողջ կեանքը։ Ո՞չ ոքի համար կասկածելի չէ, որ վերջին դարերը բոլորովին շուռ են տուել հին ըմբռնողութիւնը բնութեան, պատմութեան, մարդու մտաւոր և հոգևոր կեանքի մասին։ Թողնենք բնութիւնը մի կողմ. եթէ առաջ կեանքի ներքին էութիւնը մարդկային առանձին անհատների փոխադարձ յարաբերութեան և անձնաւորութեան ներքին կեանքի մէջ էին գտնում, այժմ դրան բոլորովին հակառակ՝ ամենևին կենդրոնական նշանակութիւն չտալով անձնաւորութեանն ու իւր ներքին կեանքին, կեանքի ընդլայնացումն են պահանջում, գտնելով այն իրական անհրաժեշտութիւնից բղխող մի անանձն պրոցեսի մէջ, լինի այն բնական, թէ հոգևոր յառաջախաղացութիւն։ Հին մարդը մի անբացատրելի պատկառանքով հեռու էր պահում իրեն տիեզերական շրջապատից. արդի մարդը ընդհակառակն՝

ձգտումն է մօտիկ յարաբերութիւն ստեղծել նրա հետ և մասնակից լինել տիեզերական կեանքին։ Ներկայ Պանթէիստական աշխարհայեացքների մէջ այս ձգտումն է, որ ճշմարտութեան տարրեր է բովանդակում իւր մէջ և այդ տեսակ մտածողութեանն է, որ հին կրօնական կապանքները շատ նեղ են գալիս։ Ահա թէ ինչից է առաջ գալիս բուռն տարերային ձգտումը՝ խորտակելու կրօնական հին, արդէն կեանքի համար ծանր բեռ դարձած կապանքները և նրանց տեղը դնելու նորագոյն ազատ ժամանակի անկախ մտածողութիւնը։

Բայց բացի մտաւոր կեանքից, քրիստոնէութեան հիմնադրութիւնից ի վեր բոլորովին փոխուած է նաև կեանքի ձգտումն ընդհանրապէս։ Երբ որ քրիստոնէութիւնը հանդէս եկաւ, իւր առաջ գտաւ մի յոգնած և իւր կարողութիւնների վրայ կասկածող ու յուսահատուած մարդկութիւն։ Այդ մարդկութեան տենչանքն էր կեանքի մի հաստատուն նեցուկ գտնել, այլ ոչ թէ ազատ շարժման ասպարէզ. անդորրութիւն ու խաղաղութիւն և ոչ թէ պայքար ու յառաջադիմութիւն. ապահովութիւն և թեթևացումն և ոչ թէ անկախութիւն ու սեպհական պատասխանատուութիւն։ Բնական էր, որ քրիստոնէութիւնը չնայելով իւր բոլոր հակառակութեանը ժամանակի պահանջներին, այդ ժամանակի բնորոշ գունաւորումն ստանար։ Այդպիսով առաջ եկաւ մի կողմից կազմակերպութիւնն ու հեղինակութիւնը՝ եկեղեցին,

միւս կողմից ստորադասութիւնն ու հնազանդ-բարեպաշտութիւնը՝ ժողովուրդը. ապա կատարումն տրուեց նաև անտեսանելի ճշմարտութիւնը տեսանելի կերպով պատկերացնելու ձգտմանը. հրաշալին, անըմբռնելին, կախարդականը իւր տեղն ստացաւ և քրիստոնէութիւնն էլ իւր շրջապատի արևելեան բազմազան կրօններից երփներանգ միստերիաների և խորհրդաւոր ծիսակատարութիւնների ազդեցութեամբ ու հետևողութեամբ ստեղծեց ծէս, պաշտամունք, բարք և այլն. սակայն դէկադէնտական ժամանակին յատուկ՝ ամբողջ կեանքին կրաւորական բնոյթ տալով։

Մեզ յայտնի է, որ նոր ժամանակում այդ բոլորը փոխուել է. այժմ տիրող ձգտումն է աշխատանքի ու գործունէութեան զուարթ ցանկութիւնը, յառաջադիմութիւնը, անկախութիւնն ու պատասխանատուութեան զգացմունքը։ Բնական է միանգամայն այդ պատճառով, որ հին և նոր տեսակի մտածողութեան մէջ կոնֆլիկտ առաջ գայ։ Մենք չենք կարող այժմ առաջուայ նման յաւիտենական ճշմարտութիւնը կապել միայն մի ժամանակամիջոցի հետ, յետագաներին վերապահելով միայն անաղարտ պահպանելու և ընդօրինակելու իրաւունքը, որովհետև այդ կլինէր ներգործականութեան իրաւունքի ժխտումը, որից մենք հրաժարուել չենք կարող։ Այն, ինչ որ մենք չենք առաջ բերում ու շինում, որը իւր գոյութեան համար ամենևին կախուած չէ մեր վճռից, եր-

ըէք չէ կարող մեր էութեան ամբողջ ոյժը գրաւել, մեր ամբողջ հոգևոր և մտաւոր զօրութեանը տիրանալ։ Մի ընդհանուր գաղափար պիտի լինի բոլոր ոյժերը կապող և միացնող և բոլորին դէպի մի նպատակ առաջնորդող։ Եւ յիրաւի, քանի քրիստոնէութիւնը դեռ ծանր պայքարի մէջ էր մի թշնամի աշխարհի հետ, նրա մէջ իշխում էր այն գաղափարը, թէ մի ընդհանուր գործ միացնում է բոլոր ոյժերը և իւրաքանչիւրը իւր տեղում սեպհական գործով յառաջ է տանում կեանքի ընթացքը։ Արևելեան եկեղեցու ամենամեծ Փիլիսոփան և մտաւոր ղեկավարը՝ Օրիգենէսը (նրան հետևելով նաև ուրիշ եկեղեցական հայրեր, ինչպէս օրինակ Աթանաս) այն կարծիքն է յայտնում, թէ Քրիստոսի մէջ առաջին անգամ սկսուեց աստուածային և մարդկային բնութիւնների կատարեալ միացումը և այդպիսով մարդկային բնութիւնն աստուածային դարձաւ ոչ միայն Յիսուսի մէջ, այլ նաև նոցա բոլորի, որոնք ընդունում են նրանով սկսուած կեանքը։ Ճշմարիտ հետևողը ոչ թէ միայն պիտի հաւատայ Քրիստոսին, այլ ինքը պէտք է Քրիստոս դառնայ և իւր կեանքով ու տանջանքներով ծառայէ եղբայրների փրկութեան գործին։ Քրիստոնէութեան յաղթանակից յետոյ այդ մտածողութիւնը եկեղեցական կեանքում յետ մղուեցաւ. այժմ պէտք է փոխուած պայմանների մէջ և այլ կերպով վերստին առաջ բերել այն։

Այդպիսով յաւիտենականութեան բնորոշ նշանն էլ չի լինի անշարժութիւնը ժամանակի փոփոխութիւնների հանդէպ, այլ այն ընդունակութիւնը, որ նա ժամանակի բազմազանութեան մէջ իրեն չի կորցնում, այլ ընդհակառակն ապացուցանում է իւր գերակշիռ ոյժը՝ ազատելով ժամանակը զուտ ժամանակականից։ Անշուշտ անհնարին կլինի այդ դէպքում ուշք դարձնել մանրամասնութիւնների վրայ և կրօնական կեանքը բնականաբար կդառնայ անմիջական և պարզ։ Միայն այն, ինչ որ էական է և կարևոր, պիտի անմիջական կեանք դառնայ և իւր գործունէութիւնը ազատ կերպով ծաւալէ, առանց երկրորդականի ու մանաւորի հետ խառնուելու կամ կապուելու։ Հէնց այս տեսակէտից է, որ քրիստոնէութեան մէջ ծանր հակասութիւններ են առաջ եկել. հակասութիւններ, որոնք հիմնաւորուած են թէ նրա բնութեամբ և թէ պատմութեամբ։ Այն, ինչ որ մի ժամանակ բոլորին հասկանալի և մինչև անգամ անհրաժեշտ է եղել, այսօր մեզ համար բոլորովին օտար է և անըմբռնելի։ Այդ նկատելի է թէ դաւանութեան, թէ պաշտամունքի ու ծիսակատարութեան և թէ առհասարակ քրիստոնէական սովորոյթի մէջ։ Մեր նպատակը պիտի լինի այդ պատճառով պայքար՝ աւելի մեծ պարզութիւն և անմիջականութիւն ձեռք բերելու կրօնի մէջ, գլխաւորն-ու երկրորդականը աւելի որոշ կերպով տարբերելու միմեանցից, ազատուելու քրիստոնէութեան մէջ

մտած օտար և այժմ բոլորովին աւելորդ ազդեցութիւններից և այլն։

Գերմանացի նշանաւոր փիլիսոփայի այս նկարագրութիւնը արդի կրօնական կեանքի առանձնայատկութիւնների ու հակասութիւնների մասին լիովին համոզեցուցիչ են և ճշմարիտ ոչ միայն Եւրոպական միջավայրի, այլ և մեր եկեղեցու համար. ուր թէև դեռ ևս չափազանց պակաս է կրթութիւնն ու կրօնական ծանր պրոբլեմի մասին մտածելու ընդունակութիւնը, բայց նոյն առանձնայատկութիւններն ու հակասութիւնները, նոյն պայքարը հնի և նորի մէջ հետզհետէ աւելի նկատելի և արդէն իսկ սպառնալից է դառնում։ Եթէ մինչև այժմ Հայոց հոգևորականութեան մէջ զանազան կուսակցութիւններ են որոնել և կնքել են նրանց ազատամիտ կամ պահպանողական անուններով, արել են բոլորովին ուրիշ դիտումներով առաջնորդուելով և մեծ մասամբ այնպիսի բաների վրայ հիմնուելով, որոնք բացարձակապէս ոչ մի կապ չունին յառաջադիմութեան կամ պահպանողականութեան հետ։ Այդտեղ դեր են կատարել և՛ անձնական բարեկամութիւն և՛ շահ և՛ կուսակցական կուրութիւն. բացակայել է միայն առողջ դատողութիւնը։ Դրա անմիջական հետևանքն այն է եղել, որ մեր կեանքում իսկական ազատամիտներն ու նորագոյն մտածողութեան ներկայացուցիչները համարուել են յետադէմ ու պահպանողական, իսկ հնի ու նորի մասին հասկացողութիւն անգամ

չունեցողները կամ մինչև իսկ ձեռագրերի մէջ
եղած սխալներով երդուողներն ու նրանց ան-
փոփոխ պահել ցանկացողները համարուել են
ազատամիտ ու յառաջադէմ, այդ տիտղոսը կրող
լրագրերի հետ անհասկանալի թիւրիմացութեամբ
ունեցած բարեկամութեան պատճառով միայն։
Այդպիսով յետ են մղուել հակացող, հիմնա-
կան բարեփոխութիւնների և Հայոց
եկեղեցու ազգային—ժողովրդական վե-
րածնութեան կուսակից տարրերն ու առաջ
քաշուել հին անշարժութեան, հնաւանդ սուրբ
սխալների և երանելի անբովանդակ անդորրու-
թեան ներկայացուցիչները։

Մի կողմից հնի ու նորի թշնամութիւնը, միւս
կողմից մեզնում արդէն ծայրայեղութիւնների
հասած անհասկացողութիւնը կրօնական պրօբլեմի
ու հոգևորականութեան դերի մասին ապա այն-
տեղ հասցրին, որ մի ժամանակ գուցէ ներքին
ոգևորութեամբ ու Հայոց եկեղեցու վերածնու-
թեան սրբազան գործին ծառայելու եռանդով
կուսակրօն հոգևորականութեան ծանր լուծն
իրենց վրայ առնող երիտասարդ ոյժերը ստիպ-
ուած զգացին իրենց հիասթափուել և յուսա-
խաբուած տեսնել, դժուարանալով այլ ևս մնալ
այն ասպարիզում, ուր ամեն բան կայ, բացի
որ և իցէ մխիթարութիւնից. այն շրջանի մէջ,
որի ներկայացուցիչները մեզնում անհասկանալի
կերպով ու յանդուգն սանձարձակութեամբ ար-
համարհանքի ու ծաղրի առարկայ լինել կարող

են, չնայելով իրենց բարձրագոյն կրթութեան, և անձնական շահերի յետևից ընկած, չնայելով որ թողել են ամեն անձնական բարիք, մի իրենց համար սուրբ նպատակի ծառայելու համար։ Եւ այս բոլորն այնպիսիների կողմից, որոնք կրթութեան հոտն հազիւ թէ առել են և իրենք ուրիշ ոչնչի չեն ծառայում, չնայելով բոլոր փքուն խօսքերին, բայց եթէ անհատական օգտին ու սեպհական բարօրութեանը։

Հայկական կիսակրթութեան այդպիսի վերաբերմունքի պատճառով է նաև մասամբ, որ այժմ ոչ միայն քրիստոնէական կրօնը վերև նկարագրած իմաստով, այլ նաև՝ Հայ հոգևորականութիւնը գտնւում է մի ծանր ճգնաժամի մէջ. այնպիսի ճգնաժամ, որից դուրս գալ հնարաւոր է միայն հասկացող տարրերի աշալուրջ և սրտացաւ բարեացակամութեամբ ու օգնութեամբ։ Ի՞նչ է այս րոպէիս Հայոց ամբողջ հոգևորականութեան դրութիւնը։

Իւրաքանչիւր եկեղեցական կեանքով հետաքրքրուողի և հոգևորականութեան դերն ու նշանակութիւնը փոքր ի շատէ ուղիղ ըմբռնողի համար պարզ պէտք է լինի միանգամայն, որ հոգևորականութիւնը այն մտքով պաշտօնէութիւն չէ և չպիտի լինի, ինչպէս հասկացւում է այն մեզանում և է իրականութեան մէջ։ Իսկապէս ասած քրիստոնէական կրօնի մէջ չպէտք է լինի իբրև առանձին դասակարգ, առանձին գործունէու-

թեամբ հոգևորականութիւն։ Այստեղ իւրա-
քանչիւր ոք, ամեն առանձին անհատ նոյնքան
մօտ է իւր Աստծուն, որքան միւսը և կարիք
չունի ոչ մի Միջնորդի։ Եթէ այժմ բոլոր քրիս-
տոնէական եկեղեցիներում, ուրեմն նաև մեզնում,
հոգևոր զինուորութիւն՝ քահանայութիւն կայ,
այդ ոչ թէ իդէալ պէտք է համարել, այլ քրիս-
տոնէական հասկացողութեամբ անկումն իդէալից։
Շատ հեռու կտանի մեզ պարզել, թէ ինչպէս
է եղել, ինչպիսի ազդեցութիւններով է անհրա-
ժեշտաբար առաջ եկել այնուամենայնիւ այս ձևի
հոգևորականութիւնը քրիստոնէական եկեղեցու
մէջ։ Դրա համար մենք ստիպուած պիտի լինէինք
ամբողջ եկեղեցական վարչական կազմակերպու-
թեան ծագումը նկարագրել, որ անհնարին է
մեր յօդուածի շրջանակում և կարևոր էլ չէ։
Այսքանը միայն ասենք բնորոշելու համար, որ
հին եկեղեցում, Ա. Բ. և Գ. դարերում քրիս-
տոնեաները պարծենում էին իրենց «Ընդհանուր
քահանայութեան» գաղափարով, որ յիրաւի տար-
բերում էր նոր կրօնը բոլոր հներից։ Բայց գլխաւոր
խնդիրը այստեղ մեզ համար այն չէ, թէ ինչ-
պէս է առաջ եկել մի հաստատութիւն, այլ աւե-
լի այն, թէ կարևո՞ր է նա այսօր էլ. և եթէ այո,
արդեօք այն ձևով ինչպէս որ կայ, թէ հիմնական
փոփոխութիւններ են պէտք։

Մենք արդէն ասացինք, որ զուտ քրիստոնէա-
կան սկզբունքով առանձին քահանայական դասա-
կարգ պէտք չէ և գոյութիւն չպէտք է ունենայ,

որովհետև Յիսուս Քրիստոսի շնորհիւ ամեն քրիստոնեայ առանց որ և է միջնորդի յարաբերութեան մէջ կարող է մտնել իւր Աստուծոյ հետ. ուրեմն միայն ը ն դ հ ա ն ո ւ ր  ք ա հ ա ն ա յ ո ւ թ ե ա ն  ս կ զ բ ո ւ ն ք ն է ճշմարիտը քրիստոնէութեան համար։ Եթէ այդպէս է, այժմեան ամբողջ հոգևորականութիւնը միայն մի կոչում՝ ու նպատակ կարող է ունենալ. կրթել ու զարգացնել իւրեն խնամքին յանձնուած ժողովրդին այնպէս և այն ուղղութեամբ, որ ինքը՝ հոգևորականութիւնը՝ այնպէս, ինչպէս որ կայ, աւելորդ դառնայ ապագայում։ Այդ է ամենագլխաւորը. և մեր բոլորիս նպատակը պիտի լինի այդ գործի համար աշխատել ոյժերի չափով։

Այստեղ արդէն շօշափում ենք Հայոց եկեղեցու ամենավիրաւոր տեղը։ Ընդունա՞կ է արդեօք մեր այժմեան հոգևորականութիւնը այդպիսի նպատակ ընդունելու և նրա համար աշխատելու։ Պատասխանը բոլորիս համար պարզ կերպով բացասական կլինի, եթէ մտածենք, թէ ի՛նչ է հարկաւոր այդ բանի համար ամենից առաջ։ Գիտութիւն քրիստոնէական կրօնի հիմնական սկզբունքների, պատմութեան, ներկայ աշխարհայեացքի և այլն։ Իսկ ո՞վ կպնդէ, որ այդ բոլորը Հայոց հոգևորականութեան մէջ—անհատների մասին չէ խօսքը—ամենաչնչին չափերով անգամ տարածուած է։ Այն ի՛նչ պարզ է, որ պատմական զարգացման շնորհիւ առաջ եկած հայեացքներն ու հիմնարկութիւնները միայն այն

ժամանակ կարող են յաղթահարուել և ասպարի-
զից դուրս ելնել, երբ ամենի համար որոշ կլինի, թէ
ի՛նչպէս, ի՛նչ պատճառով ու ազդեցութեամբ են
առաջ եկել նոքա և իրենց ժամանակի ո՛ր պահանջին
են բաւարարութիւն տուել։ Մի խօսքով քրիստո-
նէութեան պատմութեան ուսումնասիրութիւնն է
միայն, որ իւրաքանչիւրին յիրաւի ազատ կացու-
ցանել կարող է անցեալի աւանդական կաշկան-
դումներից և միևնոյն ժամանակ ցոյց տալ կողմնակի
կերպով, որ ամեն շրջան իւր պահանջներն
ունի, որոնց բաւարարութիւն տալը պատմական
անհրաժեշտութիւն է։

Մեր հոգևորականների մէջ էլ «զարգացած»,
«յառաջադէմ» մարդիկ շատ կան, որոնք ամեն
բանի մասին գրում են, խօսում. բայց հարցրէք
այդպիսի մէկին Քրիստոսի մասին, էլ չեմ ասում
եկեղեցու պատմութիւնից, և դուք կտեսնէք,
թէ ինչպիսի յուսահատական խնդրի առաջ էք
կանգնած։ Հայոց հոգևորականութեան մեծա-
գոյն մասը տգէտ է բացարձակաբար. հասկա-
ցողութիւն չունի ո՛չ քրիստոնէական կրօնի և ո՛չ
էլ եկեղեցու մասին. իսկ եղած «գիտուններին»
էլ չափազանց մոդեռն են կրօնական և եկեղե-
ցական պատմական ու կենսական խնդիրներով
հետաքրքրուելու համար։ Հոգևորականութիւնը
նրա համար կոչում չէ, այլ միայն հաց մատա-
կարարող պաշտօն։ Եւ ի՛նչպէս կարող է ուրիշ
կերպ լինել մի միջավայրում, ուր ամեն կրօնա-
կան բան անյատակ տգիտութեամբ ու թեթևա-

մտութեամբ արդէն «խորտակուած և ոչնչացած կամ ոչնչանալու դատապարտուած, մարդկութեան նախնական շրջանի մանկական երևակայութեան ու մտածողութեան մնացորդ» է համարում. Այդպիսի հասկացողութիւնների դէմ կռուելու կարողութիւն չունի այսօր մեր եկեղեցին միայն հոգևորականութեան տգիտութեան պատճառով. ուրեմն ամենից առաջ պէտք է այդ ցաւին դարման տանել: Միայն իսկական գիտութիւնը, լայն աշխարհայեացքը և կրօնի ու բնագիտութեան սահմանների իրար հետ չշփոթող ըմբռնումը կարող է այստեղ յեղաշրջում առաջ բերել. Սակայն մենք տեսանք, թէ ինչպիսի երկպառակութիւն կայ արդի գիտութեան, յատկապէս բնագիտութեան և հայրերից մեզ աւանդութիւն մնացած քրիստոնէական կրօնի զանազան երևոյթների մէջ. տեսանք թէ ի՛նչ է այդ հակառակութեան արդիւնքը. կարծես բնականաբար առաջ է եկել այդ պատճառով այն համոզումը, թէ Աստուծոյ հաւատը, կրօնը նախնական մտածողութեան հազարաւոր սխալներից ու իլլիւզիաներից մէկն է, որ գիտութեան շնորհիւ պիտի անպատճառ վերանայ աշխարհից:

Այդ համոզումը ի հարկէ բոլորովին անհիմն է և սխալ. ընդհակառակը՝ ինչպէս Բերլինի համալսարանի փիլիսոփայութեան ականաւոր պրոֆեսոր Ֆրիդրիխ Պաուլսենն ասում է իր նորագոյն գրուածքներից մէկում *, «Այնու-

*) Friedrich Paulsen: Die Zukunftsaufgaben der

ամենայնիւ հաւատը մնում է կենդանի, և մինչև անգամ ապացուցանում կրկին ու կրկին, որ ինքն է բոլոր պատմական կենսական զօրութիւնների մէջ ամենաուժեղը։ Առանց հաւատի դէպի բարին, ինչ կերպ ուզում է արտայայտուի այն՝ իբրև հաւատ առ Աստուած և Նախախնամութիւն, հաւատ դէպի յառաջադիմութիւն և զարգացում, դէպի ճշմարտութիւնն ու արդարութիւնը և նրանց անհրաժեշտ յաղթանակը,—ոչինչ մեծ և յարատև բան դեր չէ ստեղծուել։ Եթէ նա չէ կարող իր առարկայի իրականութիւնը ապացուցանել, ապացուցանում է իր գործունէութեամբ, որ ինքն իրական է։ Ո՛չ մի կասկած չկայ, որ հաւատն է եղել, և ոչ թէ գիտութիւնը մինչև այժմ, ամբողջ պատմութեան ընթացքում սարեր տեղափոխողը. արգելքների սարերը, որ իւրաքանչիւր գաղափարի իրականացման հանդէպ են կանգնած։ Մարդկութեան կեանքի մէջ առաջ եկած բոլոր մեծ շարժումները կրօնական սկզբնաւորութիւն ունին. պատմութեան մեծ ղեկավարներին անդիմադրելի զօրութիւն պարգևողը այն հաւատն է եղել, որ նրանք Աստուծոյ գործն են առաջ տանում և Աստուած նրանց հետ է։ Եւ մենք ոչ մի պատճառ չունինք ընդունելու, որ ապագայում ուրիշ կերպ պիտի լինի։ Հաւատը կորոշէ մարդկութեան ճակատագիրը գալիք դա-

Philosophie. (=Die Kultur der Gegenwart, I 4. Systematische Philosophie. 1907, էջ 415).

քերում էլ ճիշտ այնպէս, ինչպէս և անցեալներում. Հաւատը դէպի ապագան ու բարու և արդարութեան վերջնական յաղթանակը։

Բայց այնուամենայնիւ չպէտք է մոռանալ, որ ճգնաժամը կրօնի համար ներկայումս շատ լուրջ է և պէտք է ամէն կերպ աշխատել վերացնել այն բոլոր առիթներն ու պատճառները, որոնք այդ ճգնաժամի լուծումը աւելի ևս դժուարացնում են։

Այստեղ պէտք է ամենից առաջ ուշադրութիւն դարձնել այն երևոյթների վրայ, որոնք իբրև անցեալի մնացորդ դեռ այսօր էլ դեր են կատարում մեր եկեղեցական կեանքում. թէև, իսկապէս ասած, նրանց նշանակութիւնը բոլորովին կորել է և կամ այժմ ոչ ոքի համար հասկանալի չէ։ Մենք չենք ուզում այստեղ մանրամասն կերպով նկարագրել, թէ ինչ բան ինչ ձևով պիտի փոխել, այլ կամենում ենք միայն համառօտ կերպով մատնացոյց անել ամենաէական բաները և այն ուղին գծել, որով պէտք է այսուհետև ընթանալ մեր կարծիքով։ Ի հարկէ այլ առթիւ մենք պատրաստ ենք նաև աւելի ընդարձակ յօդուածներով վերադառնալ նոյն խնդիրներին։

Քրիստոնէական կեանքի չորս գլխաւոր կողմերն են՝ աշխարհայեացք և դաւանանք, պաշտամունք, վարչական կազմակերպութիւն և սովորոյթ։ Վերջինի մասին խօսել չենք ուզում, որովհետև միւսների նկատմամբ նա երկրորդական

է—թէև շատ անգամ աւելի դիմացկուն ու ճկուն —և նոցա հետ էլ բնականաբար փոփոխութեան է ենթարկւում։ Խօսենք ուրեմն գլխաւորների մասին։ Ամենից առաջ քրիստոնէական եկեղեցու դաւանանքը։

Ո՞ւմ համար այսօր կասկածելի է, որ կրթուածներից շատ շատերին յետ մղողը մեր կրօնից ու եկեղեցուց այդ դաւանանքն է. և մենք ստիպուած ենք խոստովանել, որ այդպիսի կրթուածները մեծ մասամբ իրաւունք ունին։ Նրանք տեսնում են այստեղ իրենց առաջ շատ կողմերով մի բոլորովին օտար, անըմբռնելի աշխարհ. որ յաւակնութիւն ունի միևնոյն ժամանակ ընդ միշտ իբրև յաւիտենական ճշմարտութիւն ճանաչուելու, բոլորի համար պարտադիր. մի ճշմարտութիւն, որից չեղուողները նզովքի են արժանանում։ Բայց այդ դաւանանքը կամ հաւատոյ հանգանակը կազմուել է սկսած Բ. դարուց Քրիստոսի յետոյ և իւր վերջնական կատարելութիւնն է գտել հիմնական գծերով Դ. և Ե. դարերի ընթացքում։ Փիլիսոփայութեան և քրիստոնէական եկեղեցու պատմութիւնն ուսումնասիրողի համար միանգամայն պարզ է, թէ ինչպէս է առաջ եկել այդ դաւանանքը, ինչպիսի աշխարհայեացքի ու պայքարի արդիւնք է այն։

Երբ Յիսուսի աշակերտներն իրենց վարդապետի պարզ քարոզը սկսեցին տարածել ամբողջ Հռովմէական պետութեան մէջ և ամեն տեղ սկսեցին քրիստոնէական համայնքներ կազմուել, ո՛չ ոքի

մտքով չէր անցնում դեռ ևս յարմարուել աշխարհի պահանջներին, որովհետև բոլոր քրիստոնեաներն անհամբեր սպասում էին Տիրոջ երկրորդ գալըստեանն հէնց իրենց օրով։ Բայց սերունդ սերնդի վրայ անյայտացան երկրի երեսից ու Տէրը երկրորդ անգամ չեկաւ։ Այն ժամանակ քրիստոնէութիւնն ստիպուած զգաց իրեն յարմարուելու աշխարհի պահանջներին և նրա բարքերի ու տուեալների նկատմամբ որոշ դիրք բռնելու։ Քանի տարածւում էր քրիստոնէութիւնը, այնքան աւելի ծանրանում էր խնդիրը, այնքան աւելի օտար տարրեր սկսում էին այս ու այն անկիւնից մուտք գործել նրա մէջ։ Փոքր բաները մի կողմ թողած. մի մեծ խնդիր կանգնած էր Բ. դարուց սկսած, Գ. դարուց աւելի ծանրացած, քրիստոնէութեան դիմաց։ Ի՞նչ է ասում քրիստոնէութիւնը հին աշխարհի կրթուածներին. ի՞նչ դիրք է բռնում դէպի հին աշխարհի փիլիսոփայութիւնն ու աշխարհայեացքը *։

Եթէ քրիստոնէութիւնը ամեն օտար բան մերժէր իր միջից և առանձնանար աշխարհից, նա ամենայն հաւանականութեամբ աւելի չէր լինի, քան թէ մի հրէական հերձուած և իբրև այդպիսի էլ շատ շուտով կանհետանար։ Բայց քրիստոնէութիւնն այնքան մեծ ներքին զօրու-

*) Տես այս բոլորի և հետևեալների մասին՝ Երուանդ վարդապետ, Ընդհանուր Եկեղեցական Պատմութիւն, հատոր Ա. Հին դար. Ս. Էջմիածին 1908։

թիւն ու ճկունութիւն ունէր, որ ամեն կողմից դէպի նա սլացող մտքերն ու գաղափարներն իւր մէջ առաւ, նրանց քրիստոնէական գոյն տուեց և այդպիսով մի կողմից ինքն յարմարուելով, միւս կողմից հին աշխարհի փիլիսոփայութիւնն յարմարեցրեց իրեն։ Հին յունական փիլիսոփայութեան, յատկապէս Պլատոնի և Նոր—Պլատոնական գաղափարների հետ ունեցած շատ սերտ շփմամբ ու անմիջական խորին ազդեցութեամբ է կազմուած հին քրիստոնէական աշխարհայեացքը, որ իւր կլասիքական արտայայտութիւնն է գտել «Հաւատոյ Հանգանակի» մէջ։ Գ. Դ. և Ե. դարու եկեղեցական հայրերը այնքան մտքի կորով ու ոյժ են ունեցել, որ առանց շփոթուելու և իրենց կորցնելու ծանր պայքարի մէջ, որ տեղի էր ունենում քրիստոնէութեան ու փիլիսոփայութեան մէջ, իրենց սեպհական աշխարհայեացքն են կազմել. Նոքա իբրև իրենց ժամանակի որդիք չեն կարողացել բնականաբար բոլորովին մեկուսանալ և ազատ մնալ փիլիսոփայական աշխարհայեացքի ազդեցութիւնից. բայց միևնոյն ժամանակ աշխատել են, որ քրիստոնէականը ոչ մի վնասը չկրի դրանից։ Եւ իրենց ժամանակի համար յաջողուել է նրանց այդ անել։ Այն հանգանակը, որ մենք այսօր մեծ մասամբ առանց մտածելու և որևէ բան զգալու անգիր ասում ենք, պէտք չէ մոռանալ, որ գրուած է շատ ազնիւ սրտերի արիւնով. որրեմն ժամանակի խորին համոզմունքի ու աշխարհայեացքի արտայայտու-

թիւն է, և ոչ թէ «քահանաների կեղծիք ու անմիտ վիճաբանութեան արդիւնք», ինչպէս կարծում են կիսակիրթ և տգէտ մարդիկ։ Եկեղեցու պատմութիւնից յայտնի է, որ ծանր վիճաբանութիւններին մասնակցել են ոչ միայն հոգևորականները, այլ երբեմն նոյն իսկ Աղէքսանդրիայի և Անտիոքի արհեստաւորները։ Մարդիկ իրենց մտքով ու սրտով կռուել են իրենց համոզումը։

Բայց ի՞նչ է հետևում այդ բոլորից։ Մի՞թէ այն, ինչ որ մի ժամանակ ընդհանուր աշխարհայեացքի արտայայտութիւն է եղել, կարող է այսօր էլ առանց այլ և այլութեան նոյնը լինել և իբրև յաւիտենական ճշմարտութիւն կաշկանդել մարդկանց միտքը։ Շատ հասկանալի է, որ մինչև այն ժամանակ կարող էր այդ համոզումը ճշմարտութիւն համարուել, քանի որ դեռ ևս տիրող էր նրա հիմքը կազմող ընդհանուր աշխարհայեացքը։ Իսկ քրիստոնէական եկեղեցու այժմեան դաւանանքի հիմքը կազմող Նոր-Պլատոնական փիլիսոփայական աշխարհայեացքը շատ վաղուց է, համարեա արդէն Զ. դարուց ի վեր, որ կորցրել է իւր նշանակութիւնը և կարելի է ասել բոլորովին անհետացել։ Այդ ժամանակներից ի վեր մեծամեծ, կարելի է ասել աներևակայելի փոփոխութիւններ են մտել մարդկութեան մտաւոր կեանքի, ընդհանուր աշխարհայեացքի (ներկայ բնագիտութիւնն ու աստղագիտութիւնը) մէջ, խախտելով եկեղեցական ներկայ դա-

ւանանքը իւր էական մանրամասնութիւններով։

Արդի, նորագոյն ժամանակի քրիստոնեան իւր ազատ իրաւունքն է պահանջում աշխարհայեացք կազմելու ներկայ գիտութեան ու փիլիսոփայութեան համաձայն, և ոչ ոք նրա առաջ այդ տեսակէտից արգելք դնել չէ կարող, և ամեն արգելք կլինի ի վնաս քրիստոնէական եկեղեցու և կրօնի։ Փոքրոգութիւն է և ծոյլ անդորրութիւն սիրելուց առաջացած երկչոտութիւն կարծել, թէ քրիստոնէական կրօնը դրանից կվտանգուի։ Մեր թուլութիւնը մենք իրաւունք չունինք քրիստոնէութեանը վերագրելու։ Վերջապէս պարզ պիտի լինի ամենքի համար, որ եթէ Գ. Դ. և Ե. դարերում եկեղեցական հայրերը իրաւունք ունէին քրիստոնէութիւնը յարմարեցնելու իրենց ժամանակի փիլիսոփայական աշխարհայեացքի ու հասկացողութիւնների հետ, այդ նոյն իրաւունքը ունինք և մենք այսօր։ Ո՛չ միայն իրաւունք է այդ, այլ մինչև անգամ մեր սրբազան պարտականութիւնն է, եթէ մենք յիրաւի քրիստոնէական կրօնի բարեկամներն ենք և ուզում ենք, որ նա գործունեայ ու գերակշիռ դեր կատարէ մեր ժողովրդի կեանքում և ոչ թէ ներկայ գիտական աշխարհայեացքից յետ մնալով և օտարանալով, հին նախապաշարմունք և անդարձ կերպով անհետացած մարդկային մտածողութեան անցած գնացած աստիճան համարուի։

Եզրակացութիւնն այն պիտի լինի անշուշտ, որ մենք պիտի կազմենք մեր քրիստոնէական աշխարհայեացքը, մեր դաւանանքը, անկախ և ազատ մնալով միանգամայն քրիստոնէական եկեղեցու պատմական զարգացման հանդէպ և նրանից վերցնելով միայն այն, ինչ որ արժէք ունի ներկայ ժամանակի համար։ Այդ աշխարհայեացքի հիմքը պիտի լինի անշուշտ, ինչպէս միշտ, այնպէս էլ այժմ քրիստոնէական աւետարանական սկզբունքը՝ Յիսուսի քարոզը մարդկանց եղբայրութեան ու Աստուծոյ որդիներ լինելու մասին, բայց ներկայ գիտութեան արդիւնքները աշխարհի ու տիեզերքի և մարդկանց մասին չպէտք է մոռացութեան տրուին։ Նոցա հակառակ ոչինչ չի կարող լինել քրիստոնէական աշխարհայեացքի մէջ, որովհետև տիեզերքի յառաջանալու, նրա զարգացման, մարդու յառաջանալու և պատմութեան մասին ոչինչ չի կարող ասել կամ ոչինչ չունի ասելու քրիստոնէութիւնը, որ հակառակ լինէր արդի գիտութեանը։ Կրօնն ինքն էլ մարդկային հոգու զարգացման մի արտադրութիւն է և նոյն ձևով ենթակայ զարգացման, ինչպէս բոլոր միւս երևոյթները։ Վերջապէս չպէտք է մոռանալ, որ մարդկային բանականութիւնն էլ աստուածային բանականութեան մի մասն է, և գիտութեան մէջ էլ յայտնւում են մարդկանց աստուածային ճշմարտութիւնները։ Հակակրօնական և Աստծուն հակառակ կլինի այդ պատճառով արհամարհել գիտութիւնը, որովհետև

դրանով մենք արհամարհած կլինենք աստուածային կայծը մարդու մէջ։

Այսքանը բաւական համարելով դաւանանքի մասին, անցնենք այժմ պաշտամունքին։ Մեր եկեղեցու այժմեան ամբողջ պաշտամունքն ու ծիսակատարութիւններն և պատմական զարգացման արդիւնք լինելով, կրում են իրենց վրայ իրենց սկզբնաւորութեան ժամանակի դրոշմը։ Զանազան կրօնների խառնուրդի ժամանակ, արևելեան խորհրդաւոր միստերիաների ազդեցութեամբ ու նմանողութեամբ առաջ եկած, անցեալում կազմուած, ամբողջ եկեղեցական պաշտամունքն ու ծէսը այսօր այլ և այն տպաւորութիւնը չեն թողնում արդի մարդու և քրիստոնեայի վրայ, ինչ որ սպասւում է և ինչ որ նրանց նպատակն է։ Ո՛չ միայն այլ և չեն հասկացւում խորհրդաւոր ծիսակատարութիւնների ժամանակ կատարուած, երբեմն մեծ կարևորութիւն ունեցող և նշանակալից գործողութիւնները, այլ ընդհանրապէս մեր օրերում կարելի է ասել կորել է հետաքրքրութիւնը հանդիսաւոր պաշտամունքի համար առհասարակ։ Շատ հեռու չգնանք. ի՛նչպիսի մեծ փոփոխութիւն է առաջ եկել մեր ժողովրդի վերաբերմունքի մէջ դէպի եկեղեցին ու իւր պաշտամունքը միայն վերջին երկու տասնամեակում։ Մի ժամանակ հանդիսաւոր պաշտամունքի ժամանակ լի էին լինում եկեղեցիները և եկեղեցական տօները մեծ դեր էին կատարում մեր կեանքում։ Իսկ այսօր նոյն իսկ մեր ամենա-

նուիրական ազգային տօները, էլ չենք ասում զուտ քրիստոնէական—կրօնական տօները, զըրկուել են իրենց նշանակութիւնից և եկեղեցին մեծ մասամբ. դատարկ է լինում այդպիսի տօներին։

Դրա պատճառները բազմաթիւ են. կատարուածի անհասկանալի լինելը, անտանելի ձանձրոյթը ժամեր շարունակ, անճոռնի յոգնեցուցիչ երգեցողութիւնը և այլն և այլն։ Ինքն ըստ ինքեան հասկանալի է, թէ ի՛նչ ուղղութեամբ պիտի լինի այստեղ բարեփոխութիւնը։ Այն ինչ որ անդառնալի կերպով հնացած է և անհասկանալի, պէտք է վերանայ պաշտամունքի միջից։ Արդի մարդը ձգտում է ամեն բանի մէջ դէպի պարզութիւն. Նոյն պահանջն է անում նա նաև պաշտամունքից. և այսօր ոչ մի կասկած լինել չէ կարող, որ մեր եկեղեցական պաշտամունքը հիմնական վերանորոգութեան ու բարեփոխութեան կարօտ է։ Նա պիտի իւր բոլոր մասերում կրճատուի, մաքրուի աւելորդ, օտար եկեղեցիների ազդեցութեամբ խճողուած տարրերից, համապատասխան գեղեցիկ երգեցողութեամբ ու երաժշտութեամբ ճոխանայ, որպէս զի նորից դէպի ինքը գրաւէ հաւատացեալներին, կրօնական սրբազան յոյզեր ու զգացումներ առաջացնելով նրանց մէջ։

Ինչո՞ւ համար ենք կարդում եկեղեցում բազմաթիւ ընթերցուածները, քանի որ կարելի է ասել ոչ ոք նոցանից բան չէ հասկանում, իսկ հասկացողներն էլ չեն լսում. ինչո՞ւ համար չա-

անգամ երկար, տաղտկալի ժամերգութիւնից յետոյ դեռ ես Բարսեղ Կեսարացու կամ մի այլ նշանաւոր եկեղեցականի ճառն ենք կարդում, քանի որ համոզուած ենք, որ ոչ ոքի և ոչ մի օգուտ չենք տալիս դրանով, այլ ընդհակառակը շատերին ուղղակի փախցնում ենք եկեղեցուց, մեռցնելով նրանց մէջ ամեն բարեպաշտութիւն։ Բարսեղ Կեսարացին և ուրիշները ժողովրդին հասկանալի լեզուով մի ժամանակ բացատրել են կատարուած տօնի նշանակութիւնը. նրանց ասածը ունկնդիրների համար կենդանի խօսք է եղել։ Միայն յետոյ, երբ հոգևորականներն անշնորհք են դարձել անձամբ մի քանի խօսք ասելու և բացատրելու տօնը, վերցրել են հին հայրերի ճառերից համապատասխան հատուածներ առել ժամերգութեան մէջ, առանց այլ ևս հասկանալի և անհասկանալի լինելու վրայ ուշադրութիւն դարձնելու։ Մեր ներկայ ցաւերից մէկն էլ պաշտամունքի նկատմամբ ուրեմն այն է, որ պէտք է քարոզը, կենդանի խօսքը յաճախանայ եկեղեցու բեմից, կենդրոնական նշանակութիւն ստանալով ամբողջ պաշտամունքի մէջ։ Անհասկանալի և աննպատակ ընթերցումները պիտի վերանան և ամեն ինչ կատարուի ժողովրդին հասկանալի լեզուով։ Մենք չպէտք է մոռանանք, որ եկեղեցին և իւր պաշտամունքը, ծէսը ժողովրդի համար է, ուրեմն պիտի աշխատի բաւարարութիւն տալ նրա հոգևոր և բարեպաշտական պահանջներին։

Վերջին խնդիրը եկեղեցական վարչութեան ու կազմակերպութեան դժուարին խնդիրն է։ Այստեղ էլ, ինչպէս նախորդ խնդիրներում ելք գտնել հնարաւոր է միայն պատմական զարգացումն ըմբռնելով։ Չենք ուզում երկար կանգառնել այդ խնդրի վրայ այժմ, բայց ոչ ոքի համար ծածուկ չէ, որ հայոց բարձրագոյն կամ կուսակրօն հոգևորականութիւնը այսօր ծանր ճգնաժամի մէջ է։ Այդ ճգնաժամի պատճառները վերև արդէն նկարագրուեցան և ընդհանուր կերպով ցոյց տրուեցին այն միջոցները, որոնցով հնարաւոր է ճգնաժամը մեղմացնել, գուցէ նաև բոլորովին վերացնել։ Ամենածանր խնդիրն այստեղ մեր կարծիքով այն է, որ կուսակրօն հոգևորականութիւնը ինքն ըստ ինքեան մահուան է դատապարտուած այն պարզ պատճառով, որ հասկացող տարրերը այժմ խոյս են տալիս այդ կոչումից, նրա ժամանակը անցած համարելով և չկամենալով մտնել այն լծի տակ, ուր շատ մեծ անկեղծութիւն է հարկաւոր կեղծ չերևալու համար։ Ինչի՞ց է այդ։

Եկեղեցական պատմութիւնը մեզ ուսուցանում է, թէ ի՞նչ պայմանների արդիւնք է կուսակրօն վանականութիւնը քրիստոնէական եկեղեցու մէջ։ Աշխարհից ձանձրացած, նրա չարիքներից փախչող հին աշխարհի մարդիկ, մի կողմից փիլիսոփայութեան, միւս կողմից հեռաւոր արեւելքի կրօնների ազդեցութեամբ խոյս են տուել դէպի անապատները, այնտեղ միայնութեան մէջ գտնելու իրենց հոգին ու իրենց Աս-

տծուն, այնտեղ սրբավայել կեանքով փառաւորելու Աստծու անունը։ Այժմեան մարդու հասկացողութեամբ Աստծուն փառաւորել կարելի է միայն գործնական կեանքի մէջ աւետարանական ճշմարտութիւնների, եղբայրսիրութեան համար կռիւ մղելով, մարդկութեան սոցիալական վերանորոգութեան համար աշխատելով։ Մի ժամանակ կուսակրօն կեանքը համարուել է աւելի սուրբ, աւելի աստուածահաճոյ կեանք. այսօր դրա մասին խօսք լինել չէ կարող. իսկական սրբութիւնը մեր հասկացողութեամբ այս ու այն արտաքին բարիքի արգելքը չէ, այլ ս ր տ ի ս ր բ ո ւ թ ի ւ ն ը։ Բնական է, որ այս հասկացողութիւնների տիրապետութեան շնորհիւ կուսակրօնութիւնը իւր ոտքի տակի հողը կորցնէր և մենք յիրաւի տեսնում ենք, որ մեր կուսակրօն հոգևորականութիւնը մի կողմից պակասում է, առանց միւս կողմից աւելանալու։ Այնպէս որ եթէ հանգամանքները չփոխուեն, մի տասն տարուց յետոյ շատ ծանր դրութիւն յառաջ կը գայ։

Ի՞նչ պէտք է անել ուրեմն, որ այս խիստ ճգնաժամն էլ յաջող և եկեղեցու համար օգտակար լուծումն ստանայ։ Մեր կարծիքով՝ պատասխանը պարզ է. ինչ որ ներկայ հասկացողութիւններին անհամապատասխան է և կրօնի համար էլ անտարբեր է, ուրեմն ոչ մի նշանակութիւն չունի, պէտք է վերացնել և նրա տեղ աւելի կենսունակ, ժամանակի պահանջներին աւելի համապատասխան բան դնել։ Շատ կրթուած մարդիկ կան,

որոնք խորապէս հետաքրքրւում են կրօնական խնդիրներով և կ'կամենային մեծ մասնակցութիւն ունենալ նոցա մէջ։ Բայց այդպիսիներին յետ են կասեցնում բացի վերև յիշուած պատճառներից նաև այնպիսի կրօնի տեսակէտից աննշանակ բաներ, որպիսին կուսակրօնութիւնն է կամ հոգևորականի տարօրինակ զգեստը։ Հարցն ուրեմն այստեղ այն է, թէ պէտք է հետամուտ լինինք պահելու անցեալի նշանակութիւնը կորցրած ժառանգութիւնը ի վնաս կրօնի, թէ ընդհակառակը՝ կրօնի օգուտն ի նկատի առնելով պէտք է այնքան ոյժ և աշխոյժութիւն ունենանք, որ ըմբռնինք թէ դէպի ուր է գնում ընդհանուր շարժումը, որպէս զի ըստ այնմ էլ, յարմար ժամանակը ձեռքից բաց չթողնելով—ընդհանուր հոսանքին դէմ, թէ նրան համաձայն—կարգաւորենք մեր գործերը։ Թէ չէ կանցնի ժամանակը, ուզենք չուզենք միևնոյն է, կկորչի անհետ մեր պինդ բռնած անօգուտ ժառանգութիւնը, իսկ մարդկութեան ամենաթանկագին գանձը՝ կրօնը դրանից խոշոր վնաս կկրէ. այն ինչ՝ այդ չի կարող լինել մեզնից ոչ ոքի ցանկութիւնը։

Մենք ընդհանուր գծերով տացինք այն, ինչ որ հարկաւոր է Հայոց եկեղեցուն։ Վերածնութիւն ու վերանորոգութիւն ներքից ի վեր Յիսուսի աւետարանի հիման վրայ, առանց յապաղելու և առանց տատանուելու. ահա մեր պահանջը և մեր զգացած ծանր կարիքը։

«Բացակայ Միաբան»-ի նման մարդիկ անհա-

ւատարմութիւն կհամարեն այդ դէպի հայրենի ժառանգութիւնը։ Իսկ մենք տեսում ենք. երբ որ մեր հայրերը իրենց զգացած կարիքներին բաւարարութիւն են տուել, միևնոյն ժամանակ հարկ վճարելով իրենց շրջանի պահանջներին, նրանց մտքովն անգամ չէ անցել և նպատակ ամենևին չեն ունեցել կաշկանդել, շղթայել մեզ։ Նոքա իրենց ազատ համարելով իրենց աշխարհայեացքը կազմելու և կեանքը կարգաւորելու, ցոյց են տալիս մեզ ընդհակառակը, որ մենք ևս, եթէ մեր հայրերի արժանաւոր որդիներն ենք, նոյնպիսի իրաւունք և պարտականութիւն ունինք. մանաւանդ որ եթէ մենք հակառակ կերպ վարուենք, կվնասենք մեր սիրած եկեղեցուն և բոլորովին կոչնչացնենք հայրերի աւանդը. նոյն իսկ նոցա թողած այնպիսի բաները, որոնք գուցէ դեռ այսօր էլ իրենց նշանակութիւնը չեն կորցրել և պիտանի լինել կարող են։

Այդ պատճառով էլ քրիստոնէական եկեղեցու թշնամին ու անհաւատարիմը ոչ թէ նա է, որ վերածնութեան կարիքն է զգում ու պահանջում, այլ նա, ով անշարժ կանգնած մնալ է ուզում հայրերի աւանդի վրայ, դրանով կանգնեցնել կամենալով մարդկային մտքի ու զգացմունքի զարգացումը. որովհետև «Սովորութիւնը կամ աւանդութիւնը առանց ճշմարտութեան միայն մի հին մոլորութիւն է»։

---